Պրոլետարներ բոլոր յերկրների,
միացե՛ք!

ՀԿ(բ)Կ Կենտկոմի կուլտ. պրոպագանդայի
յեվ ագիտացիայի բաժին

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 6 (13)

ՀԿ(բ)Կ ԿԿ հրատարակչություն «Խ. Հայաստան»
ԵՐԵՎԱՆ—1937

Պրոլետարներ բոլոր յերկրների, միացե՛ք.

ՀԿ (բ) Կ Կենտկոմի կուլտ. պրոպագանդայի
յեվ ագիտացիայի բաժին

# ԱԳԻՏԱՏՈՐԻ
# ԲԼՈԿՆՈՏ

## № 6 (13)

ՀԿ(բ)ԿԿԿ հրատարակչություն—«Կոմ. Հայաստան»
ՅԵՐԵՎԱՆ 1937

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ




Խմբագիր՝ ԳԻՆՈ ՇԱՂԳԱՄՅԱՆ
Պատ. քարտուղար՝ Գ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ
Սրբ.՝ Մ. Սուրյան և Մ. Գևորգյան
Հրատարակություն № 9, պատվեր № 428
Գլավլիտի լիազոր Շ— 1246
Տիրաժ 10.000

Պետհրատի տպարան, Յերևան


# ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՆԱԽԱՊԱՏՐԱՍՏՈՒՄԸ ԽՍՀՄ-Ի ԳԵՐԱԳՈՒՅՆ ԽՈՐՀՐԴԻ՝ ՆՈՐ ԸՆՏՐԱԿԱՆ ՍԻՍՏԵՄՈՎ ԸՆՏՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻՆ, ՅԵՎ ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՀԱՄԱՊԱՏԱՍԽԱՆ ՎԵՐԱԿԱՌՈՒՑՈՒՄԸ

**ՀԱՄԿ(բ)Կ Կենտկոմի պլենումի բանաձևն ընկեր Ժդանովի զեկուցման առթիվ՝ ընդունված 1937 թ. փետրվարի 27-ին**

ԽՍՀ Միության նոր Սահմանադրության մտցվելը նշանավորում է շրջադարձ յերկրի քաղաքական կյանքում: Այդ շրջադարձի եյությունն է ընտրական սիստեմի հետագա դեմոկրատացումը՝ խորհուրդների վոչ լրիվին հավասար ընտրությունները հա—

վատարով, բազմաստիճանը՝ ուղղակիով, բացը՝ փակով փոխարինելու իմաստով:

Յեթե նոր Սահմանադրությունը մտցվելուց առաջ գոյություն ունեյին ընտրական իրավունքի սահմանափակումներ պաշտամունքի սպասավորների, նախկին սպիտակգվարդիականների, նախկին մարդկանց և հանրօգուտ աշխատանքով չզբաղվող անձանց համար, ապա նոր Սահմանադրությունը դեն է նետում ընտրական իրավունքի ամեն մի սահմանափակում քաղաքացիների այդ կատեգորիաների համար, ընդհանուր դարձնելով պատգամավորների ընտրությունները:

Յեթե առաջ պատգամավորների ընտրությունները հավասար չեյին, քանի որ գոյություն ունեյին ընտրությունների տարբեր նորմաներ քաղաքային և գյուղական բնակչության համար, ապա այժմ ընտրությունների հավասարությունը սահմանափակելու անհրաժեշտությունը վերացված է և բոլոր քաղաքացիներն իրավունք ունեն հավասար հիմունքներով մասնակցելու ընտրություններին:

Յեթե առաջ խորհրդային իշխանության միջին ու բարձր որգանների ընտրություն-



ները բազմաստիճան եյին, ապա այժմ, նոր Սահմանադրությամբ, բոլոր խորհուրդների ընտրությունները՝ սկսած գյուղականներից ու քաղաքայիններից մինչև Գերագույն Խորհուրդը, կատարելու յեն քաղաքացիներն անմիջականորեն, ուղղակի ընտրությունների միջոցով:

Յեթե առաջ խորհուրդների համար պատգամավորների ընտրությունները կատարվում եյին բաց քվեարկությամբ և ցուցակներով, ապա այժմ պատգամավորների ընտրությունների ժամանակ, քվեարկությունը լինելու յե գաղտնի և ոչ թե ցուցակներով, այլ ըստ ընտրական շրջանների առաջադրվող առանձին թեկնածությունների:

Վերջապես, Սահմանադրությունը մտցնում է համաժողովրդական հանրաքվե (ռեֆերենդում):

Ընտրական սիստեմի այդ փոփոխությունները նշանակում են խորհրդային որգանների նկատմամբ մասսաների ունեցած վերահսկողության ուժեղացումը և մասսաների առաջ խորհրդային որգանների ունեցած պատասխանատվության ուժեղացումը:

Գաղտնի քվեարկությամբ ընդհանուր,

Հավասար և ուղղակի ընտրական իրավունք մտցվելու հետևանքը կլինի մասսաների քաղաքական ակտիվության հետագա ուժեղացումը, աշխատավորների նոր խավերի ներգրավումը պետության կառավարմանը: Դրանով իսկ պրոլետարիատի դիկտատուրան դառնում է բանվոր դասակարգի կողմից հասարակության պետական ղեկավարման ավելի ճկուն, հետևաբար ավելի հզոր սիստեմը, ընդարձակվում է բանվոր դասակարգի դիկտատուրայի բազան, ավելի ամուր է դառնում նրա հիմքը:

Այդ շրջադարձը կատարելապես զինված դիմավորելու համար, կուսակցությունը պետք է կանգնի այդ շրջադարձի գլուխը և լիակատար չափով ապահովի իր ղեկավար դերը յերկրի գերագույն օրգանների առաջիկա ընտրությունների ժամանակ:

Պատրա՞ստ են արդյոք կուսակցական կազմակերպությունները այդօրինակ ղեկավարման:

Ի՞նչ է պահանջվում կուսակցությունից, որպեսզի նա կարողանա կանգնել այդ շրջադարձի գլուխը, նոր, մինչև վերջը դեմոկրատական ընտրությունների գլուխը:

Դրա համար պահանջվում է, որ կուսակցությունն ինքն անցկացնի հետևողական դեմոկրատական պրակտիկա, որ նա ներկուսակցական կյանքում մինչև վերջն անցկացնի դեմոկրատական կենտրոնացման հիմունքները, ինչպես այդ պահանջում է կուսակցության կանոնադրությունը, որ նա ինքն ունենա այն անհրաժեշտ պայմանները, որոնց շնորհիվ կուսակցության բոլոր օրգանները ընտրական լինեն, որ քննադատությունը և ինքնաքննադատունը զարգանան լիակատար չափով, որ կուսակցական մասսայի առջև կուսակցական օրգանների պատասխանատվությունը լիակատար լինի և որ ինքը՝ կուսակցական մասսան լիովին ակտիվացվի:

Կարելի՞ յե արդյոք ասել, թե կուսակցական բոլոր կազմակերպություններն արդեն պատրաստ են կատարելու այդ պայմանները, թե նրանք արդեն լիովին վերակառուցվել են դեմոկրատիկ ձևով:

Դժբախտաբար, լիակատար վստահությամբ չի կարելի ասել այդ:

Այդ մասին է ասում կուսակցության կանոնադրությամբ և ներկուսակցական դեմոկրատիզմի հիմունքների խախտման պր-

պրակտիկան, վոր գոյություն ունի մի քանի կազմակերպություններում:

Վորո՞նք են այդ խախտումները:

Կուսակցական որգանների ընտրականությունը, վորը սահմանված է կուսակցության կանոնադրությամբ, մի շարք կազմակերպություններում խախտվել է:

Կուսկազմակերպությունները չեն պահպանում կուսակցական որգանների ընտրությունների այն ժամկետները, վորոնք սահմանված են կուսակցության կանոնադրությամբ: Լայն չափով տարածվել է զանազան ղեկավար աշխատողներին վորպես շրջկոմների, քաղկոմների, յերկրկոմների, մարզկոմների, ազգային կոմկուսների կենտկոմների պլենումների անդամներ կոոպտացիայի յենթարկելու վոչնչով չարդարացվող պրակտիկան:

Կուսակցական կոմիտեների քարտուղարներին վերադաս կուսակցական որգանների կողմից հաստատելու այն կարգը, վորը սահմանված է կուսակցության կանոնադրությամբ, մի շարք կուսկազմակերպություններում փաստորեն վերածված է նշանակման սիստեմի: Կուսկոմների քարտուղարների հաստատումը հաճախ տեղի յե



ունենում նախքան նրանց ընտրվելը տեղական կուսկազմակերպություններում: Իսկ գործնականում դրա հետևանքն է լինում այն, վոր տեղական կուսկազմակերպությունները հնարավորություն չունեն քննարկելու առաջադրվող աշխատողի թեկնածությունը:

Ընտրական պաշտոններում հաստատելը և աշխատանքից հեռացնելը հաճախ տեղի յե ունենում կուսօրգանների հարցման կարգով ընդունված վորոշումների միջոցով և առանց կուսակցական կոմիտեյի պլենումին առաջադրելու նոր աշխատողների թեկնածությունները, ինչպես և առանց այս կամ այն կուսակցական ղեկավարի հեռացման դրդապատճառները կուսկազմակերպություններին բացատրելու:

Ինչ վերաբերում է կուսօրգանների ընտրություններին, ապա մինչև այժմ էլ գոյություն ունի մի պրակտիկա, վորով թեկնածուների ցուցակների քննարկումը տեղի յե ունենում միմիայն նախնական խորհրդակցություններում, ավագների խորհուրդներում, պատգամավորությունների ժողովներում, ընդ վորում, վորպես կանոն, թեկնածությունների շուրջը հենց

պլենումներում ու կոնֆերանսներում վի-
ճաբանություններ չեն բացվում, քննար-
կումը կատարվում է ցուցակներով և
վոչ անձնապես, և այդպիսով ընտրական
պրոցեդուրը վերածվում է հասարակ ձե-
վականության:

Դեմոկրատական կենտրոնացման հի-
մունքների խախտման այդ բոլոր փաստե-
րը վնաս են հասցնում կուսակցությանը,
վորովհետև նրանք արգելակում են կուսակ-
ցության անդամների ակտիվության ա-
ճումը, մեր կուսակցության կյանքում քա-
ղաքական հատուկ նշանակություն ունեցող
ակտիվին զրկում են ղեկավար աշխատան-
քին մասնակցելու հնարավորությունից,
կուսակցության անդամներին զրկում են
կուսօրգանների գործունեությանը վերա-
հսկելու իրենց որինական իրավունքներից
և դրանով իսկ խախտում են ղեկավարների
ու կուսակցական մասսաների ճիշտ փոխ-
հարաբերությունները:

Այդպիսի պրակտիկայի ցայտուն որի-
նակներն են հանդիսանում վերջին ժամա-
նակներս Համ. Կ(բ)Կ Կենտկոմի հայտնա-
բերած այն փաստերը, վորոնք ցույց են
տալիս կուսակցական-քաղաքական աշխա-



տանքի աղաղակող թափթփվածությունն
Ազով-Սևծովյան յերկրկոմում, Կիևի
մարզկոմում, Ուկրաինայի Կ(բ)Կ Կենտկո-
մում և այլ կուսկազմակերպություններում
և վորոնք արտահայտվում են կուսակցու-
թյան կանոնադրության ու դեմոկրատիկ
կենտրոնացման սկզբունքների կոպիտ
խախտումներով՝ կուսօրգանների ընտրա-
կանությունից հեռանալու և կոոպտացիա-
յի անհանդուրժելի պրակտիկան մտցնելու
իմաստով:

Համ. Կ(բ)Կ Կենտկոմի պլենումը շեշ-
տում է, վոր Կիևի մարզկոմում ու Ա-
զով-Սևծովյան յերկրամասում յերևան
բերված սխալ ղեկավարման որինակներն
յեզակի չեն և այս կամ այն չափով հատուկ
են բոլոր յերկրային ու մարզային կուս-
կազմակերպություններին:

ՀամԿ(բ)Կ Կենտկոմի պլենումը գտնում
է, վոր այդ և նման թերությունների վե-
րացումն այն անհրաժեշտ պայմանն է, ա-
ռանց վորի չեն կարող իրագործվել կու-
սակցության այն նոր խնդիրները, վորոնք
առաջ են յեկել յերկրի քաղաքական կյան-
քում տեղի ունեցած շրջադարձի փաստի
կապակցությամբ, նոր Սահմանադրության

ընդունման ու գաղտնի քվեարկությամբ ընդհանուր, հավասար և ուղղակի ընտրական իրավունքի հիման վրա յերկրի գերագույն օրգանների առաջիկա ընտրությունների կայացությամբ:

Ուստի անհրաժեշտ է վերակառուցել կուսակցական աշխատանքը, հիմք ունենալով կուսակցության կանոնադրության պահանջած ներկուսակցական դեմոկրատիզմի հիմունքների անպայման ու լիակատար կենսագործումը:

ՀամԿ(բ)Կ Կենտկոմի պլենումն անհրաժեշտ է համարում իրականացնել և պարտավորեցնում է բոլոր կուսկազմակերպություններին՝ կենսագործել հետևյալ ձեռնարկումները՝

1. Վերացնել կուսկոմիտեների անդամների կոոպտացիայի յենթարկելու պրակտիկան և վերականգնել կուսկազմակերպությունների ղեկավար օրգանների ընտրականությունը՝ կուսակցության կանոնադրության համապատասխան:

2. Արգելել կուսօրգանների ընտրությունների ժամանակ ցուցակներով քվեարկելը: Քվեարկումը կատարել ըստ առանձին թեկնածությունների, ըստ վորում



պահպանելով կուսակցության բոլոր անդամների համար թեկնածուներին քվեարկությունից հանելու և նրանց քննադատելու անսահմանափակ իրավունք:

3. Կուսօրգանների ընտրությունների համար սահմանել թեկնածուների փակ (գաղտնի) քվեարկություն:

4. Բոլոր կուսկազմակերպություններում անցկացնել կուսօրգանների ընտրություններ՝ սկսած սկզբնական կուսկազմակերպությունների կուսկոմիտեներից մինչև յերկրային, մարզային կոմիտեները և ազգային կոմկուսների կենտկոմները, ավարտելով ընտրությունները վոչ ուշ, քան մինչև մայիսի 20-ը:

5. Պարտավորեցնել բոլոր կուսկազմակերպություններին՝ կուսակցության կանոնադրության համապատասխան խստիվ պահպանել կուսօրգանների ընտրությունների ժամկետները,— սկզբնական կուսկազմակերպություններում—տարին մի անգամ, շրջանային ու քաղաքային կազմակերպություններում—տարին մեկ անգամ, մարզային, յերկրային ու հանրապետական կազմակերպություններում— մեկ և կես տարին մի անգամ:

6. Սկզբնական կուսկազմակերպություններում խստիվ ապահովել համագործարանային ժողովներում կուսկոմներ ընտրելու կարգը, թույլ չտալով ժողովների փոխարինումը կոնֆերանսներով:

7. Վերջ տալ ընդհանուր ժողովները փաստորեն վերացնելու և ընդհանուր ժողովը ցեխային ժողովներով ու կոնֆերանսներով փոխարինելու մի շարք սկզբնական կուսկազմակերպություններում գոյություն ունեցող պրակտիկային:



## ԻՆՔՆԱՔՆՆԱԴԱՏՈՒԹՅԱՆ ՑԵՎ ՄԱՍՍԱՆԵՐԻ ՀԵՏ ԿԱՊՎԱԾ ԼԻՆԵԼՈՒ ՆՇԱՆԱԲԱՆՈՎ

Համկ(բ)Կ Կենտկոմի օրերս վերջացած պլենումը մեր կուսակցության պատմության մեջ կմտնի վորպես այդ պատմության կարևորագույն էջերից մեկը: Պլենումի նշանակությունը հսկայական է մի շարք պատճառներով, առաջին հերթին այն պատճառով, վոր նա գումարվեց Ստալինյան Սահմանադրությունը մտցվելուց անմիջապես հետո, մի Սահմանադրություն, վոր շրջադարձ է հանդիսանում մեր յերկրի քաղաքական կյանքում:

Պլենումն իր առջև խնդիր դրեց՝ ստուգել թե ի՞նչ չափով պատրաստ են կուսակցության բոլոր օղակները՝ ամբողջապես զինված դիմավորելու համար այդ շրջադարձը: Պլենումի հսկայական նշանակությունը նրա ընդունած վորոշումներն են, վորոնք

բոլշևիկներին հատուկ ամբողջ սրությամբ ու ինքնաքննադատությամբ յերևան բերին կուսակցական կազմակերպությունների աշխատանքի խոշորագույն թերությունները ու սխալները և գծեցին այդ հիվանդագին յերևույթներն ու դրանց հետևանքները վերացնելու ներգործուն ուղիները:

Ստալինյան Սահմանադրությունն արձանագրեց բանվորների ու գյուղացիների սոցիալիստական պետության ձեռք բերած մեծ նվաճումները: Կուսակցության գործի, կոմունիզմի գործի հաջողություններն արդարև շատ մեծ են: Դրանց դրական նշանակությունը հսկայական է: Սակայն հաջողություններն ունեն նաև իրենց ստվերոտ կողմերը: Վոչ բավականաչափ փորձված, վոչ բավականաչափ հմուտ մարդկանց մոտ հաջողությունները, ինչպես քանիցս մատնանշել է ընկեր Ստալինը, առաջ են բերում պարծենկոտություն, մեծամբտություն, բերանբացություն, իդեական հիվանդություն՝ անհոգություն:

Կուսակցական կազմակերպությունների շատ ղեկավարներ մոռացել են, վոր խորհրդային իշխանությունը հաստատված է առայժմ յերկրագնդի մի վեցերորդ մա-



սում է, վոր մեր յերկիրը գտնվում է կապիտալիստական շրջապատում: Իսկ կապիտալիստական շրջապատը ֆրազ չէ: Բուրժուական յերկրները միշտ էլ նույնիսկ իրար մոտ ուղարկել են և ուղարկում են բավական թվով հետախույզներ, լրտեսներ ու վնասարարներ, վորոնց նպատակն է կազմալուծել, թուլացնել հարևան պետության հզորությունը: Յերկրագնդի հինգ վեցերորդ մասում իշխող բուրժուազիան չի կարող հաշտվել և յերբեք չի հաշտվի բանվորների ու գյուղացիների սոցիալիստական պետության հաջողությունների հետ: Իսկ առանձնապես վոխակալում են ֆաշիստական պետությունները: Կապիտալիստները մեզ մոտ կրկնապատիկ, յեռապատիկ ավելի լրտեսներ են ուղարկում, քան բուրժուական յերկրները միմյանց մոտ: Տրոցկիստները մի գյուտ են միջազգային ֆաշիզմի համար. դա հարմար դիմակ է ամեն տեսակ հակախորհրդային լրտեսական ու տեռորիստական խմբակներ կազմելու համար: Տրոցկիզմն արդեն վաղուց դադարել է բանվոր դասակարգի մեջ քաղաքական հոսանք լինելուց. տրոցկիստները դարձել են մարդասպաննե-

րի մի բանդա, ֆաշիստ վարձկանների մի բանդա: Այդ բանդայի չնչին թիվը չպետք է հանդստացնի մեզ. պետք է տասնապատկել զգաստությունը:

ԽՍՀՄ-ի Ստալինյան Սահմանադրությունը, որը մտցնում է ընդհանուր, հավասար և ուղղակի ընտրական իրավունք՝ գաղտնի քվեարկությամբ, ներկայացնում է իսկական սոցիալիստական դեմոկրատիզմի՝ պատմության մեջ դեռ չտեսնված օրինակ: Եվ կուսակցությունը, ՀամԿ(բ)Կ Կենտկոմի Պլենումի այսօր հրապարակվող բանաձևում, որը ընդունված է ընկեր Ժդանովի զեկուցման առթիվ, նշում է, որ նոր ընտրական սիստեմի պայմաններում «պրոլետարիատի դիկտատուրան դառնում է բանվոր դասակարգի կողմից հասարակության պետական ղեկավարման ավելի ճկուն, հետևապես նաև ավելի հզոր սիստեմ. բանվոր դասակարգի դիկտատուրայի բազան ընդարձակվում է, նրա հիմքն ավելի ամուր է դառնում»:

Սակայն բանվոր դասակարգի դիկտատուրայի հիմքի ամրանալը ոչ միայն չի հեշտացնում, այլ ընդհակառակը բարդացնում է կուսակցության, որպես սոցիա-



լիստական շինարարության ղեկավարի, խնդիրները: Նոր ընտրությունները նշանակում են յերկրի ամբողջ ազգաբնակության քաղաքական ակտիվության հսկայական վերելք՝ յուրաքանչյուր յերկրամասում, յուրաքանչյուր քաղաքում, յուրաքանչյուր ռայոնում: Այդ ակտիվությունը պետք է գլխավորեն բոլշևիկյան կուսակցական կազմակերպությունները: Իսկ այդ նշանակում է, որ առաջին հերթին պետք է ակտիվացվի մեր կուսակցության անդամների ամբողջ մասսան: Այդ նշանակում է, որ յուրաքանչյուր կուսկազմակերպության մեջ պետք է խստիվ պահպանվեն բոլշևիզմի կազմակերպչական հիմնական սկզբունքներից մեկը հանդիսացող ներկուսակցական դեմոկրատիայի հիմունքները:

Այն ինչ, ներկուսակցական դեմոկրատիզմի սկզբունքը հաճախ խախտվում է զանազան ձևերով: Այդ սկզբունքը խախտվում է նրանով, որ չեն պահպանում կուսակցական օրգանների ընտրությունների ժամկետները, ընտրականությունը հաճախ փոխարինում են զանազան ղեկավար աշխատողներին կուսակցության շրջանային, քաղաքային ու մարզային կոմիտեների

կազմում կոոպտացիայի յենթարկելու պըրակտիկայով, յերբեմն էլ պարզապես փաստորեն նշանակելով կուսկոմների քարտուղարներին: Համկ(բ)կ Կենտկոմի Պլենումը խստիվ դատապարտեց կուսակցության կանոնադրության այդպիսի խախտումները, բոլշևիզմի սկզբունքների խախտումները և ցույց տվեց այդ խախտումների ամբողջ վնասակարությունն ու վտանգավորությունը:

Կենտկոմի Պլենումը մատնանշեց, վոր դեմոկրատիկ կենտրոնացման հիմունքների խախտման այդպիսի փաստերը վնասակար են կուսակցության համար, նախ և առաջ այն պատճառով, վոր դրանք «արգելակում են կուսակցության անդամների ակտիվության աճումը, զրկում են մեր կուսակցության կյանքում քաղաքական հատուկ նշանակություն ունեցող ակտիվին ղեկավար աշխատանքին մասնակցելու հնարավորությունից, զրկում են կուսակցության անդամներին կուսօրգանների գործունեությունը վերահսկելու իրենց օրինական իրավունքներից և դրանով իսկ խախտում են ղեկավարների ու կուսակցական մասսաների ճիշտ փոխհարաբերությունները»: Իսկ մեր



կուսակցությունը, Լենինի և Ստալինի բերանով միշտ կոչ է արել, վոր ղեկավարները վոչ միայն սովորեցնեն մասսաներին, այլ և սովորեն մասսաներից, կարողանան ոգտագործել մասսաների կյանքի հսկայական փորձը և միշտ յենթակա լինեն մասսաների վերահսկողությանը:

Կուսակցության կանոնադրության խախտումների հիմնական վտանգը,— խախտումներ, վորոնք յերևան բերեց Համկ(բ)կ Կենտկոմի Պլենումը,— հանդիսանում է ղեկավար կուսակցական աշխատողների հնարավոր կտրվածությունը մասսաներից, կուսաշխատողների մի մասի բյուրոկրատանալը և փաստորեն նրանց անկոնտրոլ լինելը կուսակցական մասսայի առջև:

Յեվ Կենտկոմի Պլենումն իր վորոշումներում խորապես վերլուծելով կուսակցական կազմակերպությունների աշխատանքի թերությունները, ուրվագծեց այդ թերություններն ու խախտումները վերացնելու միջոցները: Այդ միջոցներից գլխավորն է Կենտկոմի Պլենումի հետևյալ վորոշումը՝

«Սահմանել կուսօրգանների ընտրությունների ժամանակ թեկնածուների փակ (գաղտնի) քվեարկումը:

Բոլոր կուսկազմակերպություններում կուսօրգանների ընտրությունները՝ սկսած սկզբնական կուսկազմակերպությունների կուսկոմիտեներից մինչև յերկրային, մարզային կոմիտեներն ու ազգային կոմկուսների կենտկոմները, ավարտել ամենաուշը մինչև մայիսի 20-ը»։

Դժվար է գերագնահատել Կենտկոմի Պլենումի այս բոլոր վորոշումների ունեցած հսկայական կարևորությունը կուսակցության ամբողջ կյանքի համար։ Առաջիկա ամիսները կընթանան կուսակցական կոմիտեների ընտրությունների նշանաբանով, բոլշևիկյան ամենալայն ինքնաքննադատության նշանաբանով։ Կենտկոմը կուսակցության բոլոր անդամներին կոչ է անում ուժեղացնելու ինքնաքննադատությունը, ծավալելու ստեղծագործ ինքնաքննադատություն, վորը կոգնի դուրս գցելու կուսակցությունից բոլշևիզմին խորթ ամեն ինչ։

Թեկնածուների վրա (գաղտնի) քվեարկումն առանձնապես մեծ նշանակություն կունենա կուսօրգանների ընտրությունների ժամանակ։ Դա կուժեղացնի կուսակցական մասսայի առջև յուրաքանչյուր ղեկավարի



ունեցած պատասխանատվության զգացմունքը։ Դա բոլոր կուսկազմակերպություններում ամենալիակատար հնարավորություն կստեղծի առանց անձնավորությունները նկատի առնելու լայն ինքնաքննադատություն ծավալելու համար։ Դա կակտիվացնի ամբողջ կուսակցական մասսային, կուժեղացնի նրա քաղաքական խորաթափանցությունն ու զգաստությունը։

Իսկ զգաստությունն այն հատկությունն է, վորն այժմ առանձնապես խիստ անհրաժեշտ է բոլշևիկներին։ Այդ կրկին անգամ ակնհայտ կերպով հաստատում է վոչ միայն տրոցկիստական բանդիտների, այլև աջերի հակակուսակցական, յերկերեսանի աշխատանքի փաստը, աջեր, վորոնց պարագլուխները՝ Բուխարինը և Ռիկովը, Կենտկոմի Պլենումի կողմից վտարվեցին կուսակցության շարքերից։

Կենտկոմի Պլենումի վորոշումները վերջ կտան մի քանի ղեկավարների աններելի, իդիոտային անհոգությանը, ղեկավարներ, վորոնց մեջ տարածված եյին այն նեխված թեորիաները, թե սոցիալիստական շինարարության յուրաքանչյուր հաջողությամբ իբր թե հանդարտվում, մեղմանում է սո-

ցիալիզմի դեմ կապիտալիզմի գործակալության մղած պայքարի սուր բնույթը: Պլենումի վորոշումները կօգնեն կուսակցական կազմակերպությունների լրջորեն յերեսը դարձնելու դեպի կուսակցական-դաստիարակչական աշխատանքը: Կուսակցությունը քիչ աշխատանք չի կատարել, վոր մեր կադրերը տիրապետեն տեխնիկային: Մենք քիչ ջանք չենք թափել մասսաների տեխնիկական դաստիարակության վրա: Կենտրոնական Կոմիտեն, ընկեր Ստալինը, սուր կերպով հարց են դնում, վոր տեխնիկական դաստիարակության հին լոզունգը լրացվի նոր լոզունգով՝ բոլշևիզմին տիրապետելու, կադրերին քաղաքական դաստիարակություն տալու լոզունգով: Այդ կօգնի վերջիններիս տեսնելու թշնամուն, վորքան էլ դիմակավորված լինի թշնամին:

Կենտկոմի Պլենումի վորոշումները յերկարատև ժամանակաշրջանի ծրագիր են հանդիսանում ամբողջ կուսակցության համար: Այդ ծրագիրը պետք է արագորեն հասցնել յուրաքանչյուր կուսակցական աշխատողի, մեր կուսակցության յուրաքանչյուր անդամի գիտակցությանը: Պետք է արագորեն



վերակառուցվել, պետք է սկսել նոր ձևով աշխատել ու ապրել:

Ուշի-ուշով ու խորապես ուսումնասիրել Կենտկոմի Պլենումի վորոշումները, հասցնել դրանք յուրաքանչյուր բոլշևիկին — ահա այս է այժմ առաջնակարգ խնդիրը: Կենտկոմի Պլենումն իր վորոշումներով հզոր լծակ տվեց կուսակցության ձեռքը: Այդ լծակի օգնությամբ կուսակցական բոլոր կազմակերպությունները կվերակառուցեն իրենց աշխատանքը, վորպեսզի ավելի վստահորեն, ավելի ուժեղ թափով, ավելի համախմբված առաջ տանեն բանվոր դասակարգի մասսաներին, ժողովրդական մասսաներին դեպի նոր մարտեր՝ հանուն կոմունիզմի:

(«ՊՐԱՎԴԱ»-յի մարտի 6-ի առաջնորդողը)

# ՉՎՈՏՆԱՀԱՐԵԼ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԱՆԴԱՄԻ ԻՐԱՎՈՒՆՔԸ

Պետական իշխանության բոլոր օրգանների, բոլոր կուսակցական ու հասարակական կազմակերպությունների գործունեությունն այժմ պետք ե ընթանա Ստալինյան Սահմանադրության կենսագործման նշանաբանով: Պատմության այդ մեծագույն փաստաթուղթը հսկայական շրջադարձ ե նշանակում յերկրի քաղաքական կյանքում:

Յերկրի Գերագույն Խորհրդի առաջիկա ընտրությունների նախապատրաստությունն անտարակույս խորհրդային ժողովրդին կհասցնի քաղաքական ակտիվության նոր, բարձր աստիճանի, առաջ կբերի ազգաբնակության բոլոր շերտերի աննախընթաց շարժում: Այդ շարժումը, յերկրի քաղաքական կյանքում տեղի ունեցած այդ շրջադարձը կոչված ե գլխավորելու մեր կուսակցությունը, վորն աշխատավորների առաջա-



վոր ջոկատն ե հանդիսանում: Նա պետք ե ժողովրդի ակտիվությունն ուղղի բանվոր դասակարգի դիկտատուրայի և սոցիալիստական մեծ հայրենիքի հզորության հետագա ամրապնդման հունով:

Մեր կուսակցությունը բանվոր դասակարգի միակ և իսկական կուսակցությունն ե: Ցարական մռայլ ընդհատակում, քաղաքացիական պատերազմի փոթորկահույզ տարիներին, սոցիալիզմի բոլոր թշնամիների դեմ մղված դաժան պայքարում նա կռվում եր, ձեռք եր բերում մարտական տրադիցիաներ, ամրապնդում և բազմապատկում եր կապերը մասսաների հետ, կատարելագործում եր ղեկավարելու և՝ մասսաների հետ միասին, մասսաների գլուխն անցած՝ հաղթանակելու արվեստը: Բոլշևիկյան կուսակցությունը, վորը մարդկությանը տվել ե Լենին և Ստալին, վորը բաց ե արել նոր սոցիալիստական աշխարհ,— ունի բացառիկ ժողովրդականություն, հսկայական հեղինակություն:

Անսահման են խորհրդային ժողովրդի վստահությունը և սերն իր կուսակցության նկատմամբ, սոցիալիզմի համար մղվող մարտերում ճանաչված, ստուգված

ու կոխված ղեկավարի նկատմամբ: Ուստի ավելի մեծ է կուսակցության պատասխանատվությունը, ուստի ավելի բարդ են նրա խնդիրները, ուստի ավելի բարձր են յուրաքանչյուր կոմունիստին առաջադրվող պահանջները: Յերկրի քաղաքական կյանքում տեղի ունեցած շրջադարձը կուսակցությունը պարտավոր է դիմավորել կազմ ու պատրաստ և լիովին ապահովել իր ղեկավար դերը նոր ընտրություններում: Թե ինչպես պետք է անել այդ, թե ինչ է պահանջվում դրա համար, բացառիկ պարզությամբ ասված է ՀամԿ(բ)Կ Կենտկոմի Պլենումի յերեկ հրապարակված բանաձևում.

«Դրա համար պահանջվում է, վոր կուսակցությունն ինքն անցկացնի հետևողական դեմոկրատական պրակտիկա, վոր նա ներկուսակցական կյանքում մինչև վերջն անցկացնի դեմոկրատական կենտրոնացման հիմունքները, ինչպես այդ պահանջում է կուսակցության կանոնադրությունը, վոր նա ինքն ունենա այն անհրաժեշտ պայմանները, վորոնց շնորհիվ կուսակցության բոլոր օրգաններն ընտրական լինեն, վոր քննադատությունը և ինքնաքննադատությունը



զարգանան լիակատար չափով, վոր կուսակցական մասսայի առջև կուսակցական օրգանների պատասխանատվությունը լիակատար լինի և վոր ինքը՝ կուսակցական մասսան լիովին ակտիվացվի»:

Կենտկոմի Պլենումն արձանագրեց, վոր շատ կուսակցական կազմակերպություններում կոպիտ կերպով խախտվում է կուսակցության կանոնադրությունը, դեմոկրատական կենտրոնացումը հաճախ փոխարինվում է բյուրոկրատական կենտրոնացումով: Լայնորեն տարածված է զանազան ղեկավար աշխատողների կոոպտացիայի ամենավնասակար պրակտիկան, քարտուղարների նշանակումը, կոմունիստների իրավունքների վոտնահարումը, ինքնաքննադատության ճնշումը: Կուսակցական կազմակերպությունների վորոշ ղեկավարներ կադրերի ընտրության ու առաջքաշման բոլշևիկյան սկզբունքները փոխարինել են քաղքենիական, ընտանեկան սկզբունքներով: Արդեն պրակտիկայի մեջ է մտել այն, վոր յեթե պատասխանատու կուսակցական աշխատողը գնում է նոր մարզ, ապա նա անպայման իր հետևից քաշ է տալիս իր՝ իբր թե սառուցված աշխատողների «պոչը»:

Այսպես, օրինակ, Յարոսլավլի մարզկոմի քարտուղար ընկեր Վախրովը դեռ նոր էր յեկել նոր մարզ, յերբ սկսեց յերկրի բոլոր ծայրերից իր մոտ աշխատանքի քաշել ծանոթներին, բարեկամներին: Մարզկոմի շատ բաժինների վարիչներ, Յարոսլավլի քաղկոմի քարտուղարի, ռայկոմների քարտուղարների և նույնիսկ քաղառի վարիչի պաշտոնում նա նստեցնում է իր մարդկանց, վորոնց կազմակերպությունը բոլորովին չի ճանաչում, վորոնք առաջ են քաշված բացառապես ծանոթության կարգով, հին կապերի շնորհիվ:

Այսպիսի անպետք պրակտիկայի վտանգն այն է, վոր այդ պրակտիկան կազմակերպությունների մեջ առաջ է բերում ստորաքարշություն, աստիճանահարգություն, հետ է պահում տեղական կադրերի աճումը, խզում է ստեղծում ղեկավարության ու մասսաների միջև և նպաստում է կուսակցության կանոնադրության հիմնական սկզբունքների խախտմանը: Այս բոլորը հաստատվում է թեկուզ նույն այդ Յարոսլավլի կազմակերպության մեջ ստեղծված դրությամբ, վորտեղ նույնիսկ մարզային կուսակցական կոնֆերանսն անց է



կացել ստորաքարշության վոգով, վորտեղ ուժեղ կերպով զարգացած է կոոպտացիան, հարցման կարգով հարցեր լուծելը և այլն:

Կուսակցականության հիմնական պահանջները մոռացության տալը, ներկուսակցական դեմոկրատիայի խախտումը, անխուսափելիորեն հասցնում են կուսակցական օրգանների՝ մասսաներից կտրվելուն, առաջ են բերում մի իրադրություն, յերբ կուսակցական ղեկավարն իրեն շրջապատում է այնպիսի մարդկանցով, վորոնք ստորաքարշական յեռանդով տարված ստեղծում են շողոքորթության խեղդիչ մթնոլորտ, բթացնում են բոլշևիկյան զգաստությունը: Իսկ դրանից օգտվում են թշնամիները, ֆաշիզմի գործակալները— ստորներից ստոր տրոցկիստներն ու աջ թափթփուկները: Յեվ պատահական չէ, վոր հենց այն կազմակերպություններում, վորտեղ առանձնապես կոպիտ կերպով վոտնակոխ են արվել ներկուսակցական դեմոկրատիայի հիմունքները, վորտեղ խեղդվել է ինքնաքննադատությունը, այդտեղ հեշտությամբ կարողացել են խրամատավորվել ստոր տրոցկիստներն ու աջ թափթփուկները:

Այդպիսի անպետք պրակտիկայի ցայտուն օրինակներ են հանդիսանում վերջին ժամանակներս Ազով-Սևծովյան, Կիևի կազմակերպություններում ու Ուկրաինայի Կ(բ)Կ Կենտկոմում կուսակցական աշխատանքն աղավաղող կերպով անուշադրության մատնելու, ներկուսակցական դեմոկրատիան խախտելու՝ ՀամԿ(բ)Կ Կենտկոմի կողմից բացահայտված փաստերը: Այս օրինակները դժբախտաբար յեզակի չեն. դրանք այս կամ այն չափով հատուկ են բոլոր կուսակցական կազմակերպություններին: ՀամԿ(բ)Կ Կենտկոմի Պլենումը խիստ կերպով դատապարտեց կուսակցական աշխատանքի խեղաթյուրումներն ու թերությունները և բոլոր կուսակցական կազմակերպություններից պահանջեց վերականգնել կուսակցության կանոնադրությունն ու դեմոկրատական կենտրոնացման սկզբունքները:

Այս է ներկայումս գլխավորը, քանի որ յուրաքանչյուրի համար պետք է հասկանալի լինի, որ «...դեմոկրատական կենտրոնացման հիմունքների խախտումները վնաս են հասցնում կուսակցությանը, որովհետև նրանք արգելակում են կուսակ-



ցության անդամների ակտիվության աճումը, մեր կուսակցության կյանքում քաղաքական հատուկ նշանակություն ունեցող ակտիվին զրկում են ղեկավար աշխատանքին մասնակցելու հնարավորությունից, կուսակցության անդամներին զրկում են կուսօրգանների գործունեությանը վերահսկելու իրենց օրինական իրավունքներից և դրանով իսկ խախտում են ղեկավարների ու կուսակցական մասսաների ճիշտ փոխհարաբերությունները»:

Մենք պետք է հասնենք այն բանին, որ բոլոր կոմունիստները, բոլորը, առանց բացառության, ակտիվ կերպով մասնակցեն կուսակցական կյանքին, որ կուսակցական կազմակերպություններն ակտիվ կերպով աշխատեն: Այդ էր սովորեցնում մեզ Լենինը, այդ է սովորեցնում ընկեր Ստալինը: Մենք պետք է հասնենք այն բանին, որ «կուսակցական մասսան լուծի ինչպես կուսակցական, այնպես և ընդհանուր գործնական հարցեր, կուսակցական մասսան ընդունի իր բանաձևերը և պարտավորեցնի իր կազմակերպություններին կենսագործել այդ բանաձևերը: Մեզ մոտ խոսքը վերաբերում է գործողության դե-

մոկրատիզմին, երբ կուսակցական մասսան ինքն է լուծում հարցերը և ինքն էլ գործում է» (Ստալին):

Ինքնաքննադատությունը բոլշևիզմի անկապտելի, մշտապես գործող զենքն է: Կուսակցական օրգանների մեջ ընտրվելու համար առաջադրված թեկնածությունների գաղտնի քվեարկությունը, որը սահմանեց Կենտկոմի Պլենումը, միայն այն դեպքում կտա անհրաժեշտ արդյունքներ, եթե կուսակցական կազմակերպությունների մեջ բարձրանա բոլշևիկյան ինքնաքննադատության նոր ալիք, ինքնաքննադատության, անկախ անձնավորությունից: Այն կուսակցական աշխատողը, որը չգիտե օգտվել ինքնաքննադատությունից, իսկ առավել ևս նա, ով ճնշում է ինքնաքննադատությունը— բոլշևիկ չէ, այլ բյուրոկրատ, որին պետք է դուրս վռնդել կուսակցական ապարատից: Ինքնաքննադատության ըստ ամենայնի ծավալումը կբարձրացնի մեր կադրերի գաղափարական մակարդակը, կուսակցական մասսային թույլ կտա իր միջավայրից ղեկավար աշխատանքի առաջ քաշել այնպիսի մարդկանց, որոնք իսկապես ստուգված են բանվոր դասակար-



գի բոլոր թշնամիների դեմ մղվող պայքարում, կայուն են, մինչև վերջ նվիրված Լենինի-Ստալինի կուսակցությանը և նրա Կենտրոնական Կոմիտեին:

Ըստ որում չպետք է մոռանալ, որ խոսքը վերաբերում է պրոլետարական, բոլշևիկյան ինքնաքննադատությանը, այնպիսի ինքնաքննադատությանը, որը բացահայտում է և ուղղում մեր թերությունները, որի նպատակն է բարձրացնել մեր ամբողջ աշխատանքը: Այդ ինքնաքննադատությունը ոչ մի ընդհանուր բան չունի մեզ թշնամի բանակից եկող «քննադատության» հետ, որն ուղղված է մեր կուսակցության և խորհրդային իշխանության դեմ: Բանվոր դասակարգի թշնամիների դեմ մղվող պայքարում մենք չոր կպահենք վառոդը:

Ընկեր Ժդանովի զեկուցման առթիվ ՀամԿ(բ)Կ Կենտկոմի պլենումի ընդունած որոշումները մեծ ու պատասխանատու ծրագիր են բոլոր կուսակցական կազմակերպությունների համար: Հարկավոր է անհապաղ ձեռնամուխ լինել նրա կատարմանը: Այդ հուժկու թափով կբարձրացնի կուսակցական մասսաների քաղաքական

ակտիվությունը կօժանդակի բոլշևիկյան կադրերի աճմանը։

Աշխատավորների մարտական ավանգարդը՝ Լենին-Ստալինի կուսակցությունը պետք է կազմ ու պատրաստ դիմավորի յերկրի քաղաքական կյանքում տեղի ունեցող պատմական շրջադարձը և ապահովի մեր հայրենիքի, մեր ժողովրդի էլ ավելի հուժկու աճումը։

(«ՊՐԱՎԴԱ»-յի մարտի 7-ի
առաջնորդողը)



## ԲՈԼՇԵՎԻԿՅԱՆ ՂԵԿԱՎԱՐՄԱՆ ԵՅՈՒԹՅՈՒՆԸ

Մեր յերկրի քաղաքական կյանքում կտրուկ շրջադարձ է կատարվում։ Նոր Սահմանադրությունն էլ ավելի յե ուժեղացնում աշխատավորների քաղաքական ակտիվությունը, նպաստում է խորհրդային դեմոկրատիայի ավելի մեծ ծաղկմանը, բնակչության նորանոր խավեր հաղորդակից են լինում պետության կառավարմանը։ Ավելի քան յերբևիցե աճել է մեր կուսակցության դերը, մի կուսակցության, վորը կոչված է գլխավորելու այդ շրջադարձը և ապահովելու իր ղեկավարությունը յերկրի գերագույն որգանների առաջիկա ընտրություններում։ Մասսաների մեջ կուսակցության կողմից կատարվող կուսակցական—քաղաքական աշխատանքն այժմ նոր, միանգամայն բացառիկ նշանակություն է ստանում։ Ժամանակն է հանդես

թերել բոլշևիկյան պրոպագանդի, ագիտացիայի, կազմակերպչական գործունեության իսկական արվեստ։

Պետք է լիակատար ուղղամտությամբ ասել, որ ոչ բոլոր կուսակցական կազմակերպություններն են պարզորոշ կերպով ըմբռնում իրենց խնդիրները։ Օրինակների համար հեռու գնալու կարիք չկա։ Կուսակցության Կենտրոնական Կոմիտեի Պլենումը նշեց կուսակցական-քաղաքական աշխատանքի աղաղակող թափթփվածության փաստեր՝ Ազով–Սևծովյան երկրկոմում, Կիևի մարզկոմում, Ուկրաինայի Կ(բ)Կ Կենտկոմում և այլ կուսակցական կազմակերպություններում։ Միակողմանի կերպով տնտեսությամբ տարվելը և կուսակցական–քաղաքական հարցերն անուշադրության մատնելը թուլացրեց մեր կազմակերպությունների կապերը մասսաների հետ։ Մարդիկ սկսեցին իրենց օրորել հաջողություններով։ Այդ ծնունդ էր տալիս բերանբացության, պարծենկոտության և խելոտական հիվանդության՝ անհոգության։

Հարկավոր է, որ բոլոր կոմունիստներն էլ առանց բացառության հասկանան մեր



ապրած մոմենտի յուրատեսակությունը, հասկանան մեր կուսակցական կազմակերպությունների թույլ տված սխալների էությունը և վերակառուցվեն նոր ձևով։ Մենք, կոմունիստներս, գործողության, հեղափոխական պայքարի մարդիկ ենք, մենք դասեր ենք վերցնում, որ սխալները չկրկնենք։

Գաղտնիք չէ, որ շատ կուսակցական կոմիտեների քարտուղարներ ավելի շատ սկսել են նմանվել ինժեներների, ագրոնոմների, հաշվապահների, և մոռացել են, որ իրենք ղեկավարում են կուսակցական կազմակերպություններ, որոնց խնդիրն է ուղղություն տալ խորհրդային ու տնտեսական կազմակերպություններին և ղեկավարել դրանք։ Մոռացել են, որ իրենք պետք է լինեն մասսաների քաղաքական այնպիսի ղեկավարներ, որոնք գիտեն ժամանակին ճանաչել և յերևան բերել թշնամուն։

Կարիք կա՞ արդյոք ապացուցելու, որ տնտեսական աշխատանքով տարվելը և կուսակցական–քաղաքական հարցերը մոռացության տալը, կործանարար է մեզ համար։ Հենց որ կուսակցական կազմա-

կերպությունը վերածվում է արտադրական-տեխնիկական կազմակերպության, նա կորցնում է քաղաքական ճիշտ կողմնորոշումը, կոմունիստները մոռանում են կապիտալիստական շրջապատը, թշնամիներին, դառնում են իրենց քթից հեռու ոչինչ չտեսնող գործամոլներ: Այդպիսի կոմունիստների պատկերացման մեջ գոյություն ունեն գլխավորապես միայն մեքենաներ, տարա, պահեստի մասեր, պայմանագրեր, հաշվարկումներ, նրանք աչքաթող են անում ամենագլխավորը՝ մարդկանց, աշխատավորներին, որոնց քաղաքական կազմակերպիչներն ու ղեկավարները պարտավոր են լինել իրենք:

Մեզ այդպիսի ծայրահեղություններ պետք չեն: Դրանք հակասում են Լենինի-Ստալինի ուսմունքին: Չի կարելի կուսակցական աշխատանքը հակադրել տնտեսականին և ոտով-գլխով թաղվել դրանցից միայն մեկի մեջ. չի կարելի մոռանալ ո՛չ մեկը, ո՛չ մյուսը:

Այնինչ, արդեն նշաններ կան, որ մի քանի կուսկազմակերպություններ կարող են մյուս կողմը նետվել և յերեսի վրա թողնել տնտեսական հարցերը: Արդեն խոսակ-



ցություններ կան, թե «այժմ ավելի հեշտ կլինի», «վերացված են շատ պարտավանություններ», «այժմ ցանքով չենք զբաղվում» և այլն:

Այսպիսի տրամադրություններ կուսակցության համար նույնքան կործանարար են, որքան և կուսակցական-քաղաքական աշխատանքի անտեսումը, միմիայն տնտեսական գործերով տարվելը: Այդ պետք է հասկանալ մինչև վերջը, որովհետև յեթե այդպիսի տրամադրություններ քիչ թե շատ լայն չափով տարածվեն, մանավանդ այժմ, յերբ յերկիրը գտնվում է գարնանացանի նախօրյակին, ապա մեր տնտեսական շինարարությունը զգալի կորուստ կունենա:

Իսկ ո՞րտեղից են առաջ յեկել այդպիսի տրամադրությունները: Դրանք արդյունք են այն բանի, որ դեռ շատ կոմունիստներ, այդ թվում՝ նաև ղեկավարներ սխալ են պատկերացնում կուսակցության դերը բանվոր դասակարգի դիկտատուրայի սիստեմում, մանավանդ ներկա շրջանում, յերբ խորհրդային դեմոկրատիան պետք է իրականացվի ավելի լայն չափով. չգիտեն

այդ առթիվ Լենինի ու Ստալինի տված ցուցումները:

Տնտեսության համար մենք պատասխանատու ենք, վորպես բանվոր դասակարգի դիկտատուրայի հոգին հանդիսացող կուսակցություն: Մենք, կոմունիստներս, իրավունք չունենք տնտեսությունից հեռանալու և լիակատար չափով պատասխանատու ենք սոցիալիստական շինարարության համար:

Սակայն կուսակցական կազմակերպությունները չպետք է փոխարինեն և դիմազուրկ անեն խորհրդային ու տնտեսական այն օրգաններին, վորոնք անմիջականորեն զբաղվում են տնտեսական շինարարությամբ, ֆինանսավորմամբ, պլանավորմամբ և այլն: Կուսակցական կոմիտեները չպետք է վերածվեն տնտեսական ու խորհրդային շինարարության շտաբների: Կուսակցությունը հիմնական ղեկավար ուժ է բանվոր դասակարգի դիկտատուրայի սիստեմում,—սովորեցնում է ընկեր Ստալինը: «Նրա դերն այն է, վորպեսզի միացնի առանց բացառության պրոլետարիատի բոլոր մասսայական կազմակերպությունների աշխատանքը և նրանց գործո-



ղությունները ուղղի մի նպատակի՝ պրոլետարիատի ազատագրման նպատակին» (Ստալին):

Այդ նշանակում է, վոր կուսակցությունն ըստ ամենայնի ամրացնում է խորհրդային, տնտեսական-պրոֆ. միութենական կազմակերպությունները, նրանց միջոցով անց է կացնում իր վորոշումները, բարձրացնում է նրանց հեղինակությունը, ուղղություն է տալիս նրանց ամբողջ աշխատանքին: «Պրոլետարիատի դիկտատուրան,— ասում է ընկեր Ստալինը,— բաղկացած է կուսակցության ղեկավար ցուցումներից, պլյուս այդ ցուցումների անցկացումը՝ պրոլետարիատի մասսայական կազմակերպությունների կողմից, պլյուս դրանց կենսագործումը՝ ազգաբնակության կողմից»:

Հարց է ծագում՝ ուրեմն ի՞նչ հիման վրա կուսակցական կազմակերպությունները փոխարինում են խորհուրդներին, հողային օրգաններին, փաստորեն հեռացնում են նրանց տնտեսությունը ղեկավարելուց, միջամուխ են լինում առանց բացառության բոլոր գործերին: Ընկեր Ստալինը, խոսելով կուսակցության ղե-

կավար դերի մասին, մատնանշել է՝ «Այդ, իհարկե, չի նշանակում, որ կուսակցությունը կարող է փոխարինել կամ պետք է փոխարինի պրոֆմիությունների, խորհուրդների և մյուս մասսայական կազմակերպություններին: Կուսակցությունն իրականացնում է պրոլետարիատի դիկտատուրան: Սակայն այդ նա իրականացնում է ոչ թե անմիջականորեն, այլ պրոֆմիությունների օգնությամբ, խորհուրդների և նրանց ճյուղավորումների միջոցով: Առանց այդ «շարժափոկերի» անհնարին կլիներ քիչ թե շատ ամուր դիկտատուրա»:

Այսպես ուրեմն, լենինիզմը սովորեցնում է պայքար մղել վնասակար ծայրահեղությունների դեմ: Նույն չափով կործանարար է կուսակցության համար կուսակցական քաղաքական հարցերը մոռացության տալը և տնտեսության ղեկավարումից հեռու քաշվելը: Հարկավոր է հմտորեն զուգակցել կուսակցական-քաղաքական աշխատանքը և տնտեսության ղեկավարումը, ինչպես հարկն է հենվելով խորհրդային ու տնտեսական կազմակերպությունների վրա:



Ուրեմն ի՞նչ պետք է անել, որպեսզի այդ կազմակերպությունները միանգամայն մարտունակ լինեն և հաջողությամբ իրականացնեն կուսակցության ու կառավարության ցուցումները:

Նախ և առաջ՝ ամրացնել այդ կազմակերպությունները կադրերով, ընտրել այնպիսի մարդիկ, որոնք ընդունակ են տնտեսությունը ղեկավարել անձնվիրաբար ու նվիրվածորեն, որոնք գործին խորապես հմուտ են:

Այդ պրոբլեմը, կադրերի ընտրության պրոբլեմը առանձնապես սուր կերպով դրված է գյուղատնտեսության ղեկավարման բնագավառում: Արդյունաբերության մեջ գործը մի քիչ բարվոք է: Այստեղ կադրերը հիմնականում արդեն ստեղծվել են, մեծ դպրոց են անցել ստալինյան հնգամյակների իրականացման համար մղվող պայքարում: Իսկ գյուղատնտեսական կազմակերպություններում կադրերն ավելի թույլ են ու ավելի քիչ պատրաստված, և կուսակցական կազմակերպություններին վիճակված է, և դեռ պետք է վիճակված լինի, զբաղվել տնտեսական շինարարության նույնիսկ մանրուքով, մինչև որ հա

ղային որգաններն ինչպես հարկն ե ամրա-
նան:

Այժմ յուրաքանչյուր կուսակցական կազմակերպության առջև ամբողջ հասակով ծառացած ե գյուղատնտեսության ղեկավարման համար կադրեր ընտրելու հարցը: Դա մեծ, բարդ աշխատանք ե, վոր խորապես մտածված վերաբերմունք ե պահանջում: Կադրերը պետք ե ընտրել՝ առաջնորդվելով յուրաքանչյուր աշխատողի իրական արժեքով և վոչ թե «մեր մարդն ե» կեղծ սկզբունքով: Անձնական ծանոթությունը, մի անձնավորության նկատմամբ ունեցած նվիրվածությունը քաղքենիական նշաններ են, և դրանցով չի կարելի առաջնորդվել մարդկանց ընտրելիս: Կադրերը պետք ե ընտրել լենինյան-ստալինյան սկզբունքների հիման վրա՝ քաղաքականապես ստուգելով մարդկանց, ստուգելով նրանց նվիրվածությունը կուսակցության, նրա Կենտկոմի նկատմամբ, ստուգելով նրանց գործնական պիտանիությունը:

Վրա յե հասնում կուսակցական կազմակերպությունների աշխատանքի արմատական վերակառուցման շրջանը: Դրա հաջո-



ղությունը կախված ե այն բանից, թե ինչպե՞ս կհասկանա կուսակցական ակտիվն իր խնդիրները, ինչպե՞ս կտանի իր հետևից կոմունիստներին: Կենտրոնական Կոմիտեի Պլենումի վորոշումները պետք ե հասցնել յուրաքանչյուր կոմունիստին: Այդ վորոշումները պետք ե լայնորեն հայտնի լինեն բոլոր աշխատավորներին: Դեռ աշխատանք շատ կա: Ուստի վնասակար ու հիմարություն կլինի կարծել—ինչպես անում են մի քանի կենտրոնական թերթեր— գործն այնպես պատկերացնելով, թե կուսակցությունը և ամբողջ ժողովուրդն արդեն ուսումնասիրել ու յուրացրել են Կենտկոմի Պլենումի վորոշումները: Այդ վորոշումները դեռ ինչպես հարկն ե հայտնի չեն մասսաներին; իսկ շաղակրատ լրագրողներն արդեն ավետում են համատարած վողջույններ ու հավանություններ: Իրականության այդպիսի կեղծ պատկերումը զինաթափ ե անում կուսակցական կազմակերպություններին և բացի վնասից վոչինչ չի կարող տալ:

Առանց մի կողմից մյուսը նետվելու, լավ հիշելով և իրականացնելով Լենինի ու Ստալինի ցուցումները, մասսաների գլու-

խըն անցած, համաչափ քայլով առաջ կգնա մեր կուսակցությունը դեպի կոմունիստական հասարակության բարձունքները:

(«ՊՐԱՎԴԱ»-յի մարտի 9-ի առաջնորդողը)



ՀԿ (բ) Կ ԿԿ հրատարակչություն— Երևան. Հայաստան

Շարունակվում է 1937 թ. բաժանորդագրությունը

# „ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ“

Լույս է տեսնում ամիսը 2 անգամ

Հ Կ (բ) Կ Կենտկոմի կուլտպրոպագանդայի և ագիտացիայի բաժնի հրատարակություն

ԲԱԺԱՆԵԳԻՆԸ՝

12 ամիսը . . . 6 ռուբ.
6 » . . 3 »
3 » . . . 1 ռ. 50 կ.

Առանձին համարը՝ 25 կոպ.

Բաժանորդագրվելու համար դիմել՝ „Սոյուզպեչատ“-ի քաղաքային, շրջանային բյուրոներին և փոստի բաժանմունքներին.

